# Անտառային ՀՐԱՇՔ

ՆԱՆՍԵՆ ՄԻՔԱՅԵԼՅԱՆ

Խոր անտառի
Մթության մեջ անթափանց
Վառվեց հանկարծ
Վարագույրը խավարի,
Կես գիշերին
Հեռվում հրաշք երևաց,
Եվ արթնացան
Բնակիչներն անտառի։
Աղվեսները
Ահից հանկարծ մրսեցին,
Երբ հրաշքը
Տեսան մոտիկ բացատում.
— Այս ի՞նչ հսկա աքաղաղ է,—
Ասացին,—
Ալ կատարից
Կարմիր կրակ է ցայտում։—
Շլդիկն ասաց.
— Պտտվում է հոլի պես.
Հա՛, երևի կարուսել է
Սա մի նոր։
— Միաձա՛ն է,—
Կանչեց ոզնին հեռատես։—
Կարապն ասաց.
— Շատրվան է գունավոր։—
Մրթմրթալով ելավ արջը
Մութ որջից,
Ասաց.—Այնտեղ մեղվի պարս եմ
Նկատում։—
Բուն էլ ասաց.
— Չի երևում, ախ, ոչինչ,
Բայց աչքիս մեջ
Ինչ-որ բան է խտտում։
Կարծես ցոլքով
առավոտվա արևի
Շառագունեց միանգամից
Ամպը թուխ...—
Կապիկն ասաց.
— Հրաբուխ է երևի,
Ո՞վ էր տեսել
Անտառային հրաբուխ։—
Այդ մենք էինք,
Կես գիշերվա լուռ պահին
Մեր արշավի
Ճանապարհին կանգ առել...
Ու նետելով մեր կրակը
Խավարին,
Պիոներական խարույկ էինք
Մենք վառել։



Նկ. ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ

Ողջ օրը երկինքը հեւոգհեւոն մթագնեց. սկզբում դանդաղ, բայց քիչ անց, սև ամպերը հախուռն թափով հրմշտելով իրար՝ կուտակվեցին զենիթում. որոտ, կայծակ, ապա հորդ անձրև սկսեց տեղալ։

Պատանիները, որ լեռնային անտառի ստորոտից արդեն բավական վեր էին բարձրացել և նեղ ու դիք արահետներով մագլցում էին կատարը հասնելու, կանգ առան։

— Մի՞թե այս անգամ էլ չպիտի հասնենք բարձունքին,— մրմնջաց մեկը։

Արշավախմբի առաջնորդը՝ տասնվեցամյա Արշամը, կանգնեց տեղում. նրա հողմահար դեմքը մռայլվեց, նայեց ղղաներին և յուրովի խոսեց.

— Չէ՛, նա միշտ մեր բաղյակի հետ էր։

Նայեցին. ո՛չ առաջին, ո՛չ երկրորդ, ո՛չ էլ չորրորդ վրանում կար Գաբրիելը։ Իսկ որոտն ու կայծակը դղրդացնում էին երկինքը, վարար անձրևը շարունակում էր հեղեղել շրջապատը։

Արշամը կշտամբեց Աղասուն և բաղյակի մյուս տղաներին, որ ուշադիր չէին եղել իրենց ընկերոջ նկատմամբ. չէ՞ որ նա ամենից փոքրն էր. որոտից ու կայծակից երևի շփոթվել է, վախեցել և, ո՞վ է իմանում, թե ինչ փորձանքի է հանդիպել։ Բայց բոլորն թելադրում էր, որ նա մտնի իր կոչման՝ առաջնորդի դերի մեջ, ուստի գոռաց.

— Տագնա՜պ։

Էլ ո՞ր մեկի բերանը պատառ կմտներ, հացը և մյուս ուտելիքները դրին պայուսակների մեջ և



ՀՄԱՅԱԿ ՍԻՐԱՍ

Նկ. ՎԱԶԵ ԹԵՎԱՆՅԱՆԻ

«Այո՜, այս բարձո՜նքը... անունն էլ ճաղատ. քանի՜ անգամ եղավ մեզ վրա ծիծաղում է։ Չենք կարող հասնել, կամ որոտն ու կայծակը, տեղատարափ անձրևն է խանգարում, կամ հոգնում՝ ենք կիզող արևից, կամ, կամ...»

Եվ այսօր կարծես ավելի զորեղ էին կայծակները, ավելի թունդ էր որոտում երկինքը, ավելի հորդառատ էր անձրևը։

— Բացե՛ք վրանները, — հրամայեց Արշամը։

Հեշտ է ասել բացեք. պատանիներից յուրաքանչյուրի գլխին կարծես դույլով ջուր էին լցնում, բայց և այնպես շտապ սարքեցին վրանները։ Չորս վրան, ամեն մեկի տակ՝ չորս պատանի։

— Դե, հանգստացեք,— կարգադրեց Արշամը,— կարող եք նախաճաշել։ Երբ անձրևը դադարի, դարձյալ կշարունակենք վերելքը։ Գուցե այս անգամ հաջողվի...

Տղաները կուչ գալով վրանի տակ, մեջքներին կապած պայուսակներից հանեցին հաց, պանիր, կոտլետ, կանաչեղեն, տափաշշերով ջուր և այդպես կուչ եկած էլ սկսեցին ուտել։

Երրորդ վրանում դեռ մի պատառ չէին դրել բերանները, երբ Աղասին բացականչեց.

— Ո՞ւր է Գաբրիելը։

— Գուցե մյուս վրանումն է։

դուրս եկան վրանների տակից. այլևս ոչ մեկի մտքով չէր անցնում վրանի տակ պատսպարվելը, մինչև չգտնեին իրենց կորած ընկերոջը։ Մայկաներ և կիսավարտիքներ հագած տղաների վրայից ջուրը ծլծլում էր. այժմ էլ սկսեց կարկուտը ծեծել։

— Գաբրիե՜լ, Գաբրիե՜լ,— ամեն մեկը մի կողմ գնալով գոռում էր, ինչքան ուժ կար կոկորդում։

Եվ փնտրում էին բոլոր արահետներում, սաղարթախիտ ծառերի տակ. բայց փոքրիկը չկար ու չկար։

— Ա՜խ, ի՞նչ պիտի պատասխանենք մորը,— մղկտում էր Աղասին։

— Միհուճար որդին էր,— հառաչեց բարձրահասակ մի պատանի՝ Մուշեղը։

— Եվ տարիքով մեզնից ամենափոքրը։

— Տասնմեկը մայիսի ութին լրացավ,—ասաց Աղասին,— հավաքվեցինք, երգեցինք, պարեցինք։ Տասնմեկ մոմ վառեցինք տորթի չորս կողմը... մայրը մեզ բոլորիս համբուրում էր ու ասում՝ «Հալալ զավակ լինեք ձեր ծնողներին։ Մեծանաք, իմ Գաբրիելն էլ ձեզ հետ մեծանա, որ տասնմեկի փոխարեն հարյուր տասնմեկ մոմ վառեք»։

Անձրևը մեղմացավ։ Արշամը երեք պատանիների ուղարկեց ճամբարը. գուցե թե Գաբրիելը ետ մնա-



լով խմբից՝ վերադարձել է այնտեղ։ Պատվիրեց, որ ստույգ լուր բերեն։

Ապա Արշամը իր շուրջը հավաքեց մյուս տղաներին և մի պահ շփեց ճակատը։

Ինքը խմբի պատասխանատուն է, առաջնորդը, ուրեմն ամեն մի երեխայի վարքի համար իրենից հաշիվ պիտի պահանջեն, իսկ հիմա ոչ միայն վարքի, այլև կյանքի համար պիտի պատասխան տա... կյանքի. մի՞թե Գաբրիելը... և միտքը չլրացրեց։ Պետք էր որոշակի բան ասել իր հրամանին սպասող երեխաներին։ Առաջնորդը պետք է հրամայի, բայց զգաց, որ միայն հրամայական խոսքեր ասելով արդյունքի չի հասնի. պիտի կռահել, թե որտեղ փնտրել կորածին և ըստ այնմ գործել։

— Երեքական շարվե՛ք,— վերջապես հնչեց Արշամի հրամանը։

Եվ ամեն մի եռյակին հրահանգեց, թե ո՛ր ուղղությամբ պետք է գնա փնտրելու։

Երկու ժամվա ընթացքում խմբերը որոնում էին կորածին. այս թփի տակ, այն փոսում, լայն փչակի խոռոչում, բայց ոչ մի տեղ որևէ հուսատու հետք չգտան։

Հավաքվեցին. բարակ անձրևի տակ սպասում էին ուղարկվածների վերադարձին, բայց նրանք ուշանում էին։

Շուտով մութը վրա կհասներ։

— Ի՞նչ պիտի պատասխանենք մորը, ա՞խ,— կրկին հառաչեց Աղասին, որ հաճախ էր լինում Գաբրիելենց տանը։

— Է՜հ,— ձայն տվեց մեկ ուրիշը, որին Քոթոթ մականունով էին կոչում,— լողալի մեկն էր. անցյալ տարի էլ Սևանում քիչ մնաց մեզ փորձանքի մեջ գցեր. լողաց առաջ, թե պիտի փրկի Գայանեին... հազիվ իրեն ափը գցեց. տղերքը ուսերից բարձրացրին՝ մի դույլ ջուր թափվեց բերնից։

— Բայց Գայանեին փրկեց, չէ՞,— հակաճառեց Աղասին,— իսկի էլ լողալ չէ... ա՛յ, մի օր նրա մայրը պատմեց, որ Գաբրիելը դեռ չորս տարեկան էր, հանգիստ չէր նստում. հա մորից պահանջում էր, թե՝ գործ անեմ, և վերցնում էր ուրագը, սղոցը, թե՝ պիտի ջարդված աթոռը սարքեմ-նորոգեմ։ Սկզբում եղածն էլ ջարդուփշուր էր անում, բայց մի երկու տարի հետո արդեն իրոք ջարդված աթոռն էլ էր սարքում, տան ամեն տեսակ գործի էլ հասնում։

— Է՜հ, դու էլ բան ասիր,— սրտնեղեց Քոթոթը.— Ես ասում եմ լողալ էր. մի օր կրկես էին տարել. տեսել էր, թե ոնց է վարժեցնողը առյուծին, վագրին, արջին բիփ կպած կանգնում ու նրանց խաղացնում. եկել պարծենում էր, թե ո՛չ առյուծից է վախենում, ո՛չ վագրից, ո՛չ էլ արջից։ «Որ տեսնեմ, գլուխը կշոյեմ, հետը կխոսեմ, կասեմ՝ թող նստեմ մեջքիդ, գնանք ման գալու»։

— Ոնց որ քաջ Նազարը,— ձայնեց Մուշեղը։

— Քաջ Նազարը դեռ մի զարկով հազար ճանճ էր սպանում, իսկ սրա ականջն էնօր մի ճանճ էր մտել, մի ժամ գոռում էր։

— Ճանճը, որ արջի ականջը մտնի, արջն էլ կգոռա-կգոռա։

— Դե, հիմա էլ գնացել է արջի ականջից ճանճը դուրս քշի, ծուռթաթի գլուխը շոյի, որ էլ չգոռա,— հեգնեց Քոթոթը։

— Եկա՜ն,— խոսողներին ընդհատեց Աղասին և ընդառաջ վազեց ճամբարից վերադարձող երեք տղաներին։

Տղաները հասան, և ավագը գլխիկոր զեկուցեց Արշամին.

— Ո՛չ, այնտեղ էլ չկար Գաբրիելը։

Բոլորը մռայլվեցին։

— Գուցե թե գազանի է հանդիպել,— կմկմաց մեկը։

— Եթե հանդիպեր, գոնե ձայն կհաներ,— վրա բերեց Մուշեղը։

— Ամպի գոռոցի միջից երեխայի ձա՞յն կլսվեր,— մղկտաց Աղասին։

«Գազանը փախցրել ու խժռել է և հիմա կուշտ ու կուռ իր որջում մրափել», —այս էին մտածմունքները։



— Ա՜խ, ափսոս տղա։

Շատերի, նույնիսկ Քոթոթի աչքերին արցունք երևաց, և նա արդեն հեկեկոցով ասաց.

— Ա՜խ, Գաբրիել ջան, եթե անցյալ տարի նա չլիներ, մեր Գայանը կխեղդվեր Սևանում։

— Հապա՜,— բրթմնջաց Աղասին,— հապա՜, ասում էիր...

— Շատ երեխաներ, թեկուզ կրկեսում արջ, առյուծ որ տեսնեն, գլուխները կթաքցնեն հայրիկի, մայրիկի թևի տակ, իսկ Գաբրիե՞լը...

Խմբի առաջնորդ Արշամը շատ անհանգիստ էր. անձրևը կրկին վարարեց, էլի որոտ ու կայծակ։

## ՃԱՄԲԱՐԻ ՄՈՏՈՎ

*ՍԱՐԳԻՍ ԽԱՐԱԶՅԱՆ*

Քնել է ճամբարն անտառի փեշին.
Օրոր է ասում գիշերը Լոռվա,
Ամռան անձրևից ծնված գոլորշին
Հեռվում լույսերն է շղարշում նրա։
Երգում է անհոգ ծղրիդը արտում,
Զնգում են ձորի ջրերն անվրդով.
Ճամբարի խորին անդորրն իմ սրտում՝
Ես անց եմ կենում ճամբարի մոտով։
Անց եմ կենում մեր հանդով պապական
Եվ մտածում եմ երկնքի տակ զով...
Այստեղ նիրհում է երկրիս ապագան
Ժիր մանուկների պայծառ երազով։
Այնպե՜ս է հոգիս վեհանում մի պահ՝
Երգել եմ ուզում աղբյուրի հետ ջինջ,
Շուտով առավոտն իր զանգը կտա
Եվ մանուկները կարթնանան քնից։
Կաղմկեն նրանք, կանցնեն սարից-սար,
Զվարթ կանչերով իրար ձայն կտան։
Խնդրո՜ւմ տուր նրանց, բնությո՛ւն իմ մայր,
Հրաշք գանձերով քո գեղեցկության։
Թող իմաստնանան քեզանով նրանք,
Թող մտնեն ուրախ ձոր ու արահետ,
Որ տուն դառնալիս կարոտով անհագ
Քո ծով բուրմունքը տանեն իրենց հետ։

Մութը վրա հասավ։ Ի՞նչ պատասխանի Գաբրիելի մորը, ճամբարի ղեկավարներին, դպրոցի դիրեկտորին. ուզում էր բարկանալ այն պատանիների վրա, որոնք աչքաթող էին արել փոքրիկին։ Գուցե տղան հոգնել է, ուզել է մի տեղ հանգստանալ, իսկ ընկերներն առանց նրան նայելու առաջ են անցել։ տղան մոլորվել է ու... փորձանքի հանդիպել։

Այո, ուզում էր բարկանալ, բայց ի՞նչ օգուտ։ Նախ և առաջ պետք է ինքն իր վրա բարկանար։ Առաջնորդ էր. ամենափոքրիկին, ուրեմն ամենաթույլին պետք է իր կողքին պահեր, հոգատար լիներ և ոչ թե սիրտած, բաղցր խոսքեր ասեր հոգատարության մասին։ Այո, ինքն է մեղավորը. Եվ մտքում վճռեց. «Ո՛չ, ես այլևս ո՛չ ճամբար, ո՛չ տուն չեմ կարող վերադառնալ»։ Ապա մյուսներին լսելի ասաց.

— Է՜յ, դու, ճաղա՛տ բարձունք, մինչև ե՞րբ այդպես անմատչելի մնաս...

— Վա՜յ, ինչ մութ գիշեր է,— գոչեց Քոթոթը,— մի աստղ էլ չի երևում։

— Տղերք,— ասաց Արշամը,— անձրևն էլի մեղմացավ, հարավից երկինքը բացվեց. տեսեք, մի աստղ էլ երևաց. ահա՛, թող Աղասին դառնա ձեր ավագը և դուք վերադարձեք ճամբար։

— Իսկ դու՞,— հարցրեց Աղասին։

— Ես կմնամ այստեղ... էլի՛ կփնտրեմ, գուցե թե...

— Ո՛չ, ո՛չ, ես էլ կմնամ քեզ հետ,— համառեց Աղասին,— Մուշեղին նշանակիր խմբի ավագ, թող նա տղաներին տանի ճամբար։

— Ո՞չ, ես էլ կմնամ։

— Ես է՜լ,— գոչեցին համարյա բոլորը միաբերան։

Ո՞վ գնա, ո՞վ մնա։ Ոչ ոք չէր ուզում թուլամորթ, վհատ երևալ, բայց մի քանիսն արդեն դողում էին ցրտից. թրջված մայկան ու կիսավարտիքն ավելի մրսեցնում էին, քան պատսպարում լեռնային անտառի սառը քամուց։

Դժվարանում էին վճռել՝ ո՞վ գնա, ո՞վ մնա։

Հանկարծ Քոթոթը գոռաց.

— Նայեցեք ճաղատ բարձունքի՜ն։

Նայեցին, նայեցին։ Բարձր լեռան գագաթին ինչ-որ բան էր պեծպլտում։

— Խարույկ է, խարու՜յկ,— հրճվանքով բացականչեց Քոթոթը, և իրոք պեծպլտոցն արդեն բոց էր դարձել։

Ո՞վ կարող է լինել։

— Հովիվներ։

— Ոչ, ի՞նչ գործ ունի հովիվը ճաղատ բարձունքում. ոչխարներն այնտեղ ուտելու բան չունեն։

— Բարձունքի լանջերին թարմ առվույտ կա։ Ոչխարները թողել են լանջին, հովիվները բարձրացել, կրակ են արել, որ...

— Որ ի՞նչ...

— Որ բոց լինի և գայլերը չմոտենան։ Գայլերը բոցից վախենում են։

— Ա՞հ, ուրեմն իրոք գայլեր կա՞ն այնտեղ,— մղկտաց Քոթոթը։

— Ամեն տեսակ արարած էլ կա։

Արշամը մտավ իր դերի մեջ։

— Մագլցե՞նք... ինձ հետ՝ Աղասին, Քոթոթը,— տվեց նաև այլ երեք տղաների անունները,— իսկ դու՛, Մուշե՛ղ, խումբը կգլխավորես։

Մուշեղը կարգադրեց վրանները հավաքել։ Տղաները մեջք-մեջքի տվին, որ տաքանան։

Իսկ վեց հոգին մագլցում էր։ Խոր խավար։ Եվ գագաթին բոցավառված խարույկն ավելի պայծառ էր լուսավորում։ Արշամի և իր հինգ ընկերների շնչերը կտրվում էին, բայց, հետաքրքրությունից վառված, ինչքան կարող էին, արագ էին մագլցում։

— Օ՜յ,— տնքաց Քոթոթը։

— Ի՞նչ եղավ։

— Ծունկս քարի կպավ։

— Դու էլ ժամանակ գտա՞ր...

— Դուք գնացեք, ես կամաց-կամաց։

— Հիմի էլ քեզ թողնենք,— զայրացավ Արշամը,— ո՛չ, մեզ հետ,— և տղաներից մեկին կարգադրեց, որ Քոթոթի կողքից քայլի։

— Ոչի՞նչ, ոչի՞նչ, Թաշկինակով կկապեմ ծունկս, կբարձրանամ,— հանգստացրեց Քոթոթը։

Վերջապես Արշամը, Աղասին և Քոթոթն արդեն բարձունքի կատարին էին։ Երեքն էլ աչքները թարթելով, նայում էին խարույկին։ Առաջնորդը՝ Արշամը երկու քայլ առաջ անցավ. չռած աչքերով նայեց ու նայեց. այո՛, խարույկը լուսավորում էր, պայծառ լուսավորում էր մի պատանու դեմք։

Ի՞նչ է, դա առասպելական Վահա՞գնն էր՝ ծնված բոցերից։

Ո՛չ, դա ինքը՝ քիչ առաջ կորած Գաբրիելն էր։

Արշամը թռիչքով հասավ, գրկեց պատանուն, սեղմեց կրծքին, սեղմեց ու համբուրեց գլուխը, ճակատը, աչքերը։

— Դու՜, դու՜։

— Այո, ես... այստեղ եմ։

— Բարձունքի գագաթին,— մոտեցան Աղասին և Քոթոթը։

. — Եվ գագաթին վառեցի խարույկը, որ դուք անտառում չմոլորվեք։

— Մենք չմոլորվե՞նք,— կմկմաց առաջնորդը։

— Իհարկե, դու՛ք... ես այստեղից տեսնում եմ ամբողջ աշխարհը. իսկ դուք անտառի խիտ ծառերի մեջ կարող էիք մոլորվել։ Որոտի, կայծակի, հորդ անձրևի ժամանակ ձեզ կորցրի... Որպեսզի չմոլորվեմ, մագլցեցի, հասա բարձունքը և ամեն ինչ պարզ տեսա. տեսա և անձուխ կրակ արեցի, խարույկը բոցավառեցի, որ դուք էլ տեսնեք խարույկ-փարոսը և ոլոր-մոլոր ճամփաները թողնելով, գտնեք ուղիղ ճամփան։





# ԾԱՂԿՈՒՄ Է

Թուրքմենիան մեր հայրենիքի ամենահարավային հանրապետությունն է։ Արևն այստեղ թեև կյանք ու բարիք է տալիս մարդկանց, բայց և չորացնում է գետինը՝ այն վերածելով քարքարոտ ու ավազոտ հարթավայրի։ Կարակումի անապատը վիթխարի վառարանի նման անտանելի շոգ է տարածում իր շրջակայքը։ Երկրագործության համար շատ քիչ հող է մնացել. ընդհանուր տարածության մեկ հարյուրերորդական մասը։ Ամենուրեք փռված են ժանգա-դեղնավուն ավազակույտեր, որ գոյացրել են անապատային մրրիկները. ահա հանրապետության համայնապատկերը, երբ նայում ես ինքնաթիռից։ Եվ այդ ավազե միօրինակ անսահմանության մեջ տեղ-տեղ կղզյակների նման երևում են օազիսներ, սարերի մանուշակագույն նախշեր և ժամանակակից քաղաքների բարեկարգ թաղամասեր։

Թուրքմենիան հակադրությունների երկիր է։ Անապատային անկենդան տարածություններ և փյունիկյան արմավենի, նռնենիներ ու ձիթենիներ։ Ջրազուրկ ավազուտներ, որտեղ մի ջրհորը մյուսից հեռու է տասնյակ, երբեմն էլ հարյուրավոր

Լայպցիգի տոնավաճառում թուրքմենական գորգերն արժանացել են ոսկե մեդալների և դիպլոմների:

Ազգային արվեստի թանգարանում կա մի գորգ, որը կշռում է 865 կիլոգրամ և ունի 193,5 քառակուսի մետր մակերես: Այդ գորգ-հսկայով կարելի է ծածկել մի ամբողջ տուն: Գորգը բաղկացած է 48 միլիոն 732 հազար հանգույցից:

Անցած տարի Թուրքմենիայի կոլտնտեսությունները տնկել են շուրջ 1,5 միլիոն թթենի, 400 հեկտարով ավելացնելով թթենու այգիները, որոնք առատ կեր են մատակարարում շերամորդերին:




# ԹՈՒՐՔՄԵՆԱԿԱՆ ՀՈՂԸ

կիլոմետրերով. և հորդառատ ու լայնահուն Ամու-Դարյան: Այսպիսին է Թուրքմենիան: Բայց հիմա չի կարելի խոսել Կարակումի անկենդանության մասին: Ավազուտներում արդեն բարձրացել են նավթի բազմաթիվ վիշկաներ: Ու ոչ միայն նավթի: Կարակումն իր ներսում կուտակել է վեց տրիլիոն խորանարդ մետր գազ: Կանցնի որոշ ժամանակ. և դեղին հարթավայրով կձգվեն Բայրամ-Ալի-Աշխաբադ-Բեզերին գնացող գազատար խողովակները:

Հարուստ է թուրքմենական հողը: Այստեղ աճում է բարձրորակ բամբակ, որից պատրաստում են նուրբ գործվածքներ: Թուրքմենիայի լեռնային արոտավայրերում թափառում են նշանավոր կարակուլ տեսակի ոչխարների անհամար հոտեր: Կանաչին են տալիս երկինք խոյացող վիթխարի թթենիները, որոնց տերևներով սնվում են շերամորդերը: Բայց հանրապետության գլխավոր հարստությունը մարդիկ են, մարդիկ, որոնք իրենց աշխատասիրությամբ ու նվիրվածությամբ վերափոխում են կյանքը, ծաղկեցնում են անապատները, էլ ավելի հզորացնում մեր սիրելի հայրենիքը:

Սովետական իշխանության տարիներին Թուրքմենիայում նավթի հանույթը մեծացել է 100 անգամ և այժմ հասել է 8500 միլիոն տոննայի:

1970 թ. նախատեսվում է ստանալ 17 միլիարդ խորանարդ մետր գազ: 1958 թ. գազի շատրվան խփեց հանրապետության ամենածայր հարավում և Կարակումի կենտրոնական մասերում: Գազի մեծ պաշարներ հայտնաբերվեցին նաև Բայրամ-Ալիի շրջանում:

Հանրապետության երկրաբանների համար սկսվել է մի անսովոր աշխատանք: Նրանք խմելու ջուր են փնտրում անապատներում: Արդեն քաղցրահամ ջրի մեծ պաշարներ են հայտնաբերվել նույնիսկ Կարակումի ավազուտներում: Յասխանում գտնված ջրի պաշարը կազմում է 10 խորանարդ կիլոմետր: Դա ստորերկրյա մի մեծ ջրամբար է, որից խողովակներով ջուրը հասում է մինչև Նեբիտ-Դաղ: Շուտով Յասխանի ջրերը կհասնեն Չելեքեն և նավթարդյունաբերական վայրերը:



Աշխաբադ

# ԱՆԱՊԱՏԸ ՆԱՀԱՆՋՈՒՄ Է





Կարակում...

Տոթակեզ այս անապատը քանի՜-քանի՜ հետաքրքրական պատմություններ է թաքցնում իր խորհրդավոր ու լռին ավազուտներում: Անապատը շատ շատերին է հիշում. և՛ նրանց, ովքեր իրեն նվաճելու համար ոտք դրին իր անծայր ու ամայի ավազուտները, և՛ նրանց, ովքեր ընդմիշտ մնացին ու ետ չվերադարձան: Անմոռաց մի իրողություն է նաև թուրքմեն Աղա-Մամեդի պատմությունը:

Նա իր ուղտին նստած անցնում էր Կարակումի ավազուտներով: Սաստիկ շոգից ու ծարավից սպառվել էին նրանց վերջին ուժերը: Բախտը ժպտաց. նրանք հանդիպեցին մի ջրհորի: Սակայն ջրհորը շատ խոր էր, իսկ պարանը՝ կարճ:

Անգթորեն խորովում էր արևը, իսկ ջուրը նրանց կողքին



# ՅՈԹ ԵՂԲԱՅՐՆԵՐԻ ԾԱՌԸ

*Թուրքմենիայի զարդը հանդիսացող Ֆյուրյուզինյան դաշտավայրում շատ հին ժամանակներում ապրել է քրդական մի ցեղ: Դաշտավայրի ծայրին բխում էր Ոսկե աղբյուրը, որից սկիզբ էին առնում Զուլի և մեկ ուրիշ գետ, որը անուն չուներ:*

*Մի անգամ Կոպետ-Դաղի ստորոտում հայտնվեցին պարսիկներ: Նրանք տեսան ծաղկուն դաշտավայրը և որոշեցին նվաճել այն: Քուրդ տղամարդիկ իսկույն հեծան թուրքմենական արագավազ ձիերը և կռվի ելան պարսիկների դեմ:*

*Այդ ժամանակ դաշտավայրում ապրում էր մի ընտանիք. յոթ եղբայր ու մի քույր: Քրոջ անունը Ֆյուրյուզա էր: Եղբայրները իրար հետ համերաշխ չէին և միասին դուրս չեկան թշնամու դեմ: Նրանք գնացին առանձին-առանձին և առանձին-առանձին էլ սպանվեցին: Ամեն անգամ, երբ գալիս էր այս կամ այն եղբոր սպանության լուրը, քույրը այդ մասին հայտնում էր իր ծերունի հորը, և սա մի չինար էր տնկում զոհվածի հիշատակին: Շուտով ծառերի թիվը հասավ յոթի:*

*Այդ ժամանակ Ֆյուրյուզան տղամարդու շորեր հագավ, զենք վերցրեց ու գնաց թշնամու դեմ կռվելու: Նա կռվեց քաջաբար, բայց այնուամենայնիվ հայրը ստիպված եղավ տնկել ևս մի չինար: Երբ թշնամին դուրս վռնդվեց հարազատ հողից և ծառերն սկսեցին աճել ու մեծանալ, մարդիկ նկատեցին, որ բոլոր ութ չինարներն էլ միացել, մի հզոր բուն են կազմել:*

*Մինչև հիմա էլ դրանք աճում են միասին: Յոթ մարդ չեն կարող գրկել այդ հսկա ծառերը:*

*Միայն բոլորովին վերջերս չինարներից մեկը սկսեց չորանալ, մարդիկ ստիպված եղան սղոցել այն: Ասում են, որ Ֆյուրյուզան չի ցանկացել ապրել եղբայրների մոտ, որովհետև նրանք համերաշխ չեն եղել իրար հետ, ու դրա համար էլ մարել է իրենց օջախի ծուխը:*

*Յոթ եղբայր-չինարները դեռ կանգուն են և տեսնողներին սովորեցնում են միշտ լինել միասին:*

*Իսկ Ֆյուրյուզինյան դաշտավայրի անանուն գետակը կոչվեց Ֆյուրյուզայի անունով:*

էր, ոտքերի տակ, բոլորովին մոտիկ: Մարդն ու ուղտը թեքվեցին ջրհորի վրա, որ կուլ տան ներքևից եկող զովությունը: Բայց իզուր: Ուղտը դնչով հրեց տիրոջ ուսը, ասես շտապեցնում էր նրան. «Դե ի՞նչ ես կանգնել, շուտ արա, ջուր հանիր»: Հետո կենդանին գլուխը բարձրացրեց դեպի կիզիչ արևը և աղեկտուր կանչեց: Աղա-Մամեդը անարցունք լաց եղավ և ընկավ ավազին:

Ապա նա սթափվեց և ընդունեց մի սարսափելի որոշում. ըսպանել իր ուղեկցին: Սպանեց, ուղտի կաշուց երկար պարան սարքեց, ջուր հանեց ու ինչքան կարող էր խմեց գոլ ջուրը: Բայց հիմա ինչպե՞ս շարունակի ճանապարհը. մինչև մյուս ջրհորը մոտ հարյուր կիլոմետր է: Աղա-Մամեդը տակառիկը ջուր լցրեց, դրեց ուսին ու ճամփա ընկավ... Սակայն նա տեղ չհասավ: Նույն ճանապարհով անցնող քարավանատերերը նրա անկենդան մարմինը թաղեցին ավազի տակ, իսկ ջրհորի մոտ տեսնելով ուղտի մաշկահան դիակը, ամեն ինչ հասկացան:

Այժմ սովետական մարդիկ շատ բան են արել Կարակումում, որպեսզի Աղա-Մամեդի մասին եղած պատմությունը մնա միայն որպես դառը հիշողություն: Կարակումի ավազուտներում մեկը մյուսին են փոխարինում գիտնականների ու [illegible]ավորների արշավախմբերը: Նրանց խնդիրն է բերրի հողեր գտնել անապատում, կանգնեցնել ավազահողմերի անվերջանալի վազքը, որի արագությունը օրական կազմում է 20 կիլոմետր: Ուժեղ քամիները առաջվա նման էլ չեն կարող ավազների տակ ծածկել ոչ մի բնակավայր: Անապատային բույսերի ամուր արմատները կանգնեցրել են ավազե ալիքների կործանարար վազքը: Շարժվող ավազաթմբերի ճանապարհին կանգնել է ևս մի արգելք՝ Կարակումի ջրանցքը: Սառնորակ ջուրը գլգլում է ավազուտներում և դարավոր ամայի անապատը վերածում արոտավայրերի ու բամբակի դաշտերի: Կարակումի ջրանցքի շինարարության վրա աշխատում են 36 ազգությունների ներկայացուցիչներ: Ջրանցքը ձգվում է Միջին Ասիայի տոթակեզ անապատների միջով: Արդեն կառուցված են առաջին և երկրորդ հերթերը՝ ավելի քան 800 կիլոմետր երկարությամբ: Ամու-Դարիայի ջրերը արդեն կենդանություն են տվել 160 հազար հեկտար պապակ հողերի: Հնգամյակի վերջում Կարակումի ջրանցքի շուրջը ոռոգելի հողերի տարածությունը կհասնի ավելի քան 250 հազար հեկտարի:

Կարակումի ընդերքը, թեև դժվարությամբ, մարդուն պարգևում է իր գանձերը՝ նավթ, ջուր, գազ, հանքային նյութեր:

# ԹՈՒՐՔՄԵՆԱԿԱՆ ԺԵՆՇԵՆ

*Կանայք այն կրում են որպես թալիսման, իբր տիրոջը փրկում է պատահականություններից, պահպանում նրա առողջությունն ու երջանկությունը:*

*Հին ժամանակներում, դեռևս 5-րդ դարում, հույները այդ բույսից պատրաստում էին ցավը մեղմացնող դեղորայք: Ասորեստանում այն հայտնի էր նույնիսկ 9-րդ դարում (մ. թ. ա.): Իսկ մեզ մոտ գտնվեց 1938 թվականին և բոլորովին պատահական կերպով: Մի ձիավոր տուն էր վերադառնում սարերից և հանկարծ նկատեց մի տարօրինակ բույս. տունկը՝ կարճ, իսկ վարդաթերթերի ձևով դասավորված տերևների փունջը մոտ 1,5 մետր տրամագիծ ուներ: Կանաչ փնջի կենտրոնում կային վառ կարմիր պտուղներ: Ձիավորը զգուշորեն բույսը հանեց հողից և բերեց բուսաբանների մոտ: Սրանք շատ զարմացան և իսկույն բաց արին բուսաբանական հաստափոր տեղեկագրքերը, որտեղ հիշատակված են մեր երկրում աճող բոլոր բույսերը: Շատ փնտրեցին, բայց այդպիսի բույս չգտան:*

*Այսպես հայտնագործվեց թմրախոտը, որին ասում են նաև մարդախոտ կամ մանդրագոր:*

*Թմրախոտի բուժիչ հատկությունների մասին իզուր չէ, որ ավանդություններ գոյություն ունեն: Ցավը վերացնող ժամանակակից դեղամիջոցը՝ սկոպոլամինը, ներգործում է ճիշտ այնպես, ինչպես թմրախոտը: Բայց չէ՞ որ վերջինս գործածվել է ավելի քան 2 հազար տարի առաջ.*

*Թմրախոտի արմատների քաշը հասնում է մինչև 5 կիլոգրամի: Սակայն մեր երկրում թմրախոտը շատ քիչ է աճում, միայն Թուրքմենիայում, այն էլ բնության մի փոքրիկ անկյունում: Գիտնականները երկար խորհեցին այդ մասին և պարզեցին, թե ինչումն է թմրախոտի սերմերի վատ տարածվելու գաղտնիքը: Սերմերը շատ քիչ են ընկնում հողին, որովհետև պտուղները ուտում են թե մարդիկ և թե կենդանիները:*

# ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՄԲ

Քեզ կոչում են պատանի լենինյան: Իսկ ինչու՞ են այդպես ասում: Որովհետև դու սիրում ես հարազատ Լենինին և սրբորեն կատարում նրա պատգամները: Հետո՞: Որովհետև դու պիոներ ես, իսկ պիոներական կազմակերպությունը կրում է Լենինի անունը: Երբ մեծանաս ու դառնաս կոմերիտական, քո կոմերիտմիության տոմսի վրա կլինի Լենինի ուրվանկարը և «Համամիութենական լենինյան կոմունիստական երիտասարդական միություն» մակագրությունը: Ուրեմն կոմերիտմիությունը նույնպես կրում է Լենինի անունը: Իսկ



Լենինգրադ

կոմունիստական կուսակցությու՞նը: Դա լենինյան կուսակցությունն է, Լենինի ստեղծած կուսակցությունը: Պիոները, կոմերիտականը, կոմունիստը բոլորն էլ լենինյան են:

Եվ պատահական չէ, որ այն ամենը, ինչ որ կարևոր է, գլխավոր ու թանկագին, կոչում ենք Վլադիմիր Իլյիչի անունով:

Նայիր աշխարհագրական քարտեզին: Պամիրի ձյունապատ լեռներում դու կտեսնես Լենինի գագաթը: Մեր երկրի հերոս քաղաքներից մեկը կոչվում է Լենինգրադ: Դա այն քաղաքն է, որտեղ Լենինը հավաքեց առաջին բանվորական ջոկատը՝ պայքարելու ընդդեմ ինքնակալության, ժողովրդի ազատության համար, մի քաղաք, որտեղ թնդաց «Ավրորայի» համազարկը և որտեղ սկսվեց Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունը: Այստեղ է աշխատել առաջին սովետական կառավարությունը՝ Լենինի գլխավորությամբ: Լենինի քաղաք:

Իսկ ա՛յ, այնտեղ, հեռավոր Կարայի ծովում է գտնվում Լենինի նեղուցը: Տաջիկներն իրենց քաղաքն անվանել են Լենինաբադ, հայերը՝ Լենինական, ղազախները՝ Լենինոգորսկ, կիրգիզները՝ Լենինոպոլ, ուզբեկները՝ Լենինսկ, բելոռուսները՝ Լենինո:

Եղե՞լ ես արդյոք մեր հայրենիքի մայրաքաղաք Մոսկվայում: Այնտեղ շատ բան է կապված Լենինի անվան հետ:

1918 թ. երբ Լենինն եկավ Մոսկվայի գործարաններից մեկը, թշնամիները նրա կյանքի դեմ մահափորձ կատարեցին: Այժմ այդ գործարանը հայտնի է որպես Վլադիմիր Իլյիչի անվան:

Լենինգրադյան և Լենինյան պողոտաները հսկա մագիստրալներ են: Լենինգրադյան պողոտայից դուրս է գալիս մի փողոց, որտեղ գտնվում է «Պրավդա» թերթի տպարանը, այն կրում է Լենինի անունը:

Լենինի պողոտան տանում է դեպի Լենինյան բլուրները: Իսկ ի՞նչ կա այնտեղ, Լենինյան բլուրներում: Պիոներների պալատը, որը մի ամբողջ «պիոներական հանրապետություն» է:

Լենինյան բլուրներում շուտով կկանգնի Լենինի հուշարձանը: Այնտեղ է գտնվում Մոսկվայի համալսարանի շենքը: Այդ բազմահարկ տանը կան 45 հազար տարբեր սենյակներ: Որպեսզի բոլորը տեսնես, հարկավոր է անցնել 150 կիլոմետր: Եթե ցանկանաս լինել այդ սենյակներից ու դահլիճներից յուրաքանչյուրում թեկուզ մեկ րոպե, անհրաժեշտ է կորցնել ավելի քան 700 ժամ, այսինքն մեկ ամսից ավել:

Ոչ հեռու այն տեղից, որտեղ 1920 թ. մայիսի 1- ին Լենինը որոշեց կանգնեցնել Կարլ Մարքսի արձանը և այժմ այն կանգնած է, գտնվում է



Լենինական






Լենինի անվան պետական գրադարանը։ Այնտեղ է պահվում 22 միլիոն գիրք, ամսագրեր ու թերթեր։

Լուժնիկիում է գտնվում Լենինի անվան կենտրոնական ստադիոնը, ուր տեղավորվում է հարյուր հազարից ավելի հանդիսատես։

Աշխարհի ամենալավ մետրոպոլիտենը Մոսկվայի Լենինի անվան մետրոպոլիտենն է։ Ահա թե ինչ է ասել մի ֆրանսիացի. «Փարիզի մետրո, դու բավականին խղճուկ ես՝ համեմատած մոսկովյան մետրոպոլիտենի հետ»։ Իջնել փարիզյան մետրոյի կայարանը, դա հավասար է՝ մտնել նկուղ։ Սովետական Միությունում էլ նույնն է, թե ընկնել ոսկեզօծ և մարմարե պալատ։ Փարիզում մետրոյով գնալու համար պետք է ունենալ ամուր ոտքեր. որովհետև այնքա՜ն հոգնեցուցիչ է քայլել աստիճաններով, մոսկովյան մետրոպոլիտենում կան շարժական աստիճաններ, որոնք անհամեմատ հեշտացնում են ուղևորների տեղաշարժը։

Մոսկովյան մետրոպոլիտենի ամբողջ գծի ընդհանուր երկարությունը 100 կիլոմետրից ավելի է։ Նա ընդգրկում է ավելի քան 70 կայարան։ Նրանցից մեկը կոչվում է «Պիոներական», ի պատիվ պատանի լենինյանների։ Ստորգետնյա գնացքները օրական փոխադրում են 3 միլիոն ուղևոր, այսինքն Մոսկվայի բնակչության գրեթե կեսը։ Այդ գնացքները սլանում են ժամում 90 կմ. արագությամբ։

Մոսկվայում լենինյան վայրեր են կոչվում այն տեղերը, որտեղ ապրել, ելույթներ է ունեցել ու աշխատել Վլադիմիր Իլյիչը։

Լենինի անունն է կրում նաև ատոմային սառցահատը։

Իսկ որքա՜ն գրքեր են հրատարակվել Լենինի մասին, հապա կտավնե՜րը, կինոնկարնե՜րը, բեմադրություննե՜րը, փոստային նամականիշե՜րը... Լենինի անվամբ են կոչվում Լենինյան մրցանակները, որին արժանանում են գիտության ու տեխնիկայի, գրականության ու արվեստի ամենաառաջավորները։ Լենինի անունով են կոչվում նաև «Ժողովուրդների միջև խաղաղության ամրապնդման համար» միջազգային մրցանակները, որ հպարտությամբ են ընդունում ամբողջ աշխարհի խաղաղության համար պայքարող մարտիկները։

Լենինի շքանշանով են պարգևատրված ամենամեծ ծառայությունների համար ոչ միայն առանձին քաղաքացիներ, այլև ամբողջ կոլեկտիվներ, քաղաքներ և հանրապետություններ։ Առաջինը Լենինի շքանշան ստացավ «Կոմսոմոլսկայա պրավդա» թերթը։ Երեք անգամ այդ պարգևին է արժանացել լենինյան կոմերիտմիությունը, երկու անգամ՝ Լենինի քաղաքը։ Լենինի շքանշանը փայլում է նաև պիոներական դրոշի վրա և քո «Պիոներսկայա պրավդա» թերթի յուրաքանչյուր համարի առաջին էջին։ Լենինի շքանշանով ու ոսկե աստղով են պարգևատրված և՛ Սովետական Միության հերոսները, և՛ սոցիալիստական աշխատանքի հերոսները, և՛ հերոս քաղաքները։ Այդ շքանշանը կարելի էր տեսնել Ալեքսեյ Մաքսիմովիչ Գորկու կրծքին, Իվան Վլադիմիրովիչ Միչուրինի, Գեորգի Դիմիտրովի կրծքերին։

...Մոսկվայի Կարմիր հրապարակում, դամբարանում հավերժական քնով քնած է մեր անմոռանալի Վլադիմիր Իլյիչը։



Լենինաբադ

Ողջ երկրագնդի մարդիկ ասում են.

«Լենինը մեռել է, սակայն նրա գործը ապրում է»։

Լենինի անունը միշտ մեզ հետ է, մեր կողքին, մեր գործերում ու մեր սրտերում։

Թարգմ. ԼԻԴԱ ԱՆԱՆՅԱՆԸ



# ԱՆԱԿԱՆՋ ՄԽՈՆ

*ԶԱՎԵՆ ՍԱՐԳՍՅԱՆ*

Մխոն մեր հարևանն էր: Ապրում էր մեր գյուղում, երբ ես դեռ փոքր էի: Մահակը ձեռին, լայն փափախը միշտ դեպի աջ ականջը թեքած, ճտքավոր կոշիկները հագին, նա միշտ լեռներում էր կոլտնտեսության ոչխարի հոտի ու երեք թե չորս հսկա շների հետ:

Լսել էինք, որ աջ ականջը կտրված է: Զարմանալի էր մեզ համար, որ աշխարհում կարող է անականջ կամ մի ականջով մարդ ապրել: Երբեմն նրան հանդիպելիս գողունի նայում էինք, որպեսզի կտրված ականջը տեսնենք, սակայն փափախը թաքցնում էր մեզնից ու աշխարհից տարիներ առաջ մարդու կողմից կատարված տմարդությունը:

Մի անգամ հորս հարցրի, թե ինչու քեռի Մխոն միշտ փափախով է ման գալիս: Նա փոքր-ինչ մռայլվեց, մի պահ մտածեց, ապա հազիվ լսելի շշընջաց.

— Նա աշխարհից աշխարհի ամոթն է ծածկում:

Մեզ համար զարմանալի ու մի քիչ էլ տարօրինակ էր, որ քեռի Մխոն մեր ռուսաց լեզվի դասատուի հետ ռուսերեն էր «ջարդում»: Լեռների մշտական բնակիչը որտե՞ղ էր սովորել ռուսերեն խոսել:

— Մխիթարը աշխարհ տեսած մարդ է,— իմ հարցին կարճ պատասխանեց մայրս:

Քեռի Մխոն ինձ համար դարձել էր առեղծվածային, խորհրդավոր: Ես ուզում էի հանդիպել, ուզում էի լսել նրան: Ասում էին, որ մռայլ դեմքով այդ մարդը բարի սիրտ ունի և շատ է սիրում երեխաներին: Իսկ ես կարծում էի, թե չարությունից է նրա դեմքը այդքան մռայլ:

Հոկտեմբերյան տոներն էին: Մեր ռուսաց լեզվի դասատու Վահան Արամյանին խնդրեցինք պատմել հեղափոխության ու քաղաքացիական կռիվների մասին:

— Դիմեք քեռի Մխոյին,— ասաց նա:— Մխիթարը այդ դեպքերի կենդանի վկան է:

Զոկատի պարապմունքը նշանակեցինք մոտակա լեռան լանջին, ուր այդ օրը հոտը արոտի պետք է տաներ նա:

Մեզ տեսնելիս նա կարծես մի փոքր շփոթվեց, սակայն շուտ հավաքեց իրեն, սաստեց շներին ու մոտեցավ:

Հայտնեցինք մեր այցելության նպատակը: Նայեց նա մեզ երկա՜ր, երկա՜ր...Իր մանկությու՞նն էր հիշում, թե՞ անցած դեպքերն էր մտաբերում:

Հետո նստեց, մեզ հավաքեց շուրջն ու սկսեց իր կյանքի պատմությունը:

Վառվռուն հույսերով պատանին հազիվ էր դարձել տասնյոթ տարեկան, երբ հրաժեշտ տվեց հայրական տանը:

Աշխարհը երկնում էր, հղիացած աշխարհին ծնընդաբերողներ էին պետք: Աշխարհը երկնում էր, հրդեհված աշխարհին ջրշեջներ էին պետք:

Զինվորագրվեց հեղափոխության գործին, բողո-

# ԳԻՇԵՐ

*ՎԱԶԳԵՆ ԱՌԱՔԵԼՅԱՆ*

*Օրն է քամվում լեռան վրա,*
*Մութն է իջնում մոտիկ ձորից,*
*Դուրս են նայում աստղերն ահա*
*Աչքերի պես՝ ամպի միջից:*

*Տուն են դառնում արածելով*
*Արոտներից ոչխար ու գառ,*
*Քուն է դնում համոզելով*
*Մի գիժ քամի մի ողջ անտառ:*

*Թանձրանում է գիշերն հոգնած,*
*Լուռ խշշում են խոտ ու եղեգ:*
*...Երազիս մեջ, մինչ լուսաբաց*
*Հավաքում եմ ծղրիդ ու երգ:*



Նկ. Ալ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

քեց անարդարության դեմ. ոգևորվեց բորբոքվեց, զայրացավ. աշխարհի հատակը մաշեց իր կոշիկներով. հետո հարազատի նման դեմ-դիմաց կանգնեց հիվանդ աշխարհին ու բղավեց.

— Քեզ պետք է վիրահատել:

- Հետո լաց եղավ, ծիծաղեց, ինքն էլ չիմանալով, թե ինչ է անում ու նստեց ճյուղնապիտակ նժույգը:

Աշխարհն էլ լաց եղավ ու ծիծաղեց. աշխարհն էլ աշխարհի դեմ ըմբոստացավ:

Վառոդի ծուխը ամպ կապեց, արնոտվեցին ծաղիկները, արնահամ դարձան հայրենի ջրերը:

Անլուսին մի գիշեր արնախում մարդիկ վիրավոր Մխոյին բռնեցին, ոտքն ու ձեռքը կապեցին ու տարան անտառ: Հարբած ամբոխը աղմկեց, գոռգոռաց, ապա դանակի մի հարվածով ականջը կտրեցին:

Մրմռաց ականջաքոքը, վառվեց, հանգավ. Նորից վառվեց ու անականջ Մխոյի աչքերից կախվեցին արցունքի երկու կիսաշիթեր:

Նա ոտքի կանգնեց, բռունցք արեց ու ընկավ:

Աչքերը բացեց հիվանդանոցում:

Լողացրին նրան, բուժեցին, ոգևորեցին, բայց նոր ականջ դնել չկարողացան:

Ու ազատ արձակեցին:

Վառվող աշխարհը հանդարտվեց, զուլալվեցին աղբյուրները, անձրևը լվաց արյունոտ ծաղիկները:

Ապաքինվելուց հետո անականջ Մխոն վերադարձել էր գյուղ: Նա առաջինն էր մտել կոլտնտեսության մեջ ու դարձել նրա կազմակերպիչներից մեկը: Պայքարել կոլտնտեսության՝ կոլեկտիվ տընտեսության թշնամիների դեմ, հետո վերցրել էր մահակը և արոտի տարել ոչխարի հոտը:

Ասում են, որ այդ ժամանակ մի բուռ հող սեղմած ափի մեջ, նա երկա՜ր-երկա՜ր նայել է դեպի հեռուները, ու նրա շուրթերը որպես երդում շըշընջացել են.

— Հայրենի այս հողը վկա՝ ես ձեզ հետ եմ, սարալանջին բուսնող գույնզգույն ծաղիկներ, սընձաբույր իմ հող, ես քո մշակն եմ:

Քեռի Մխոն սիրում էր մեր լեռները: Նրա անականջ ականջը լսում էր ծաղիկների երգը:

Նա ծաղկասեր էր ու մարդասեր:

Անականջ Մխոն մահացավ վերջերս: Նրան թաղեցին լեռնալանջին:

Պիոներները նրա շիրիմը զարդարեցին ծաղիկներով, իսկ շուրջը ծառեր տնկեցին:

Ամեն տարի, երբ բացվում են ծաղիկները, պիոներները այցելում են նրա շիրմին:

Ինչ-որ մեկը շիրմաքարին փորագրել էր.

«Հոկտեմբերի մարտիկ անականջ Մխոյին հավերժ փառք»:

# ԱՄԵՆԻՑ ՋՔՆԱՂԸ



*ՎԱՐԴԳԵՍ ԲԱԲԱՅԱՆ*

Առավոտից
Ծովում վճիտ
Վետվետում էր
Ջրի մի շիթ։
Մեկ վազում էր,
Մեկ ետ գալիս,
Մեկ քնի մեջ
Ժպտում, լալիս...
Ու մի օր էլ
Ծովից ծածուկ,
Երկինք թռավ
Նա կամացուկ։
Երկինք թռավ,
Կորավ անհետ,
Արևի հուր
Շողերի հետ։
Շուրջը՝ աստղեր
Հազար ու բյուր,
Նայում են ջերմ,
Հեզահամբույր,
Իրար անվերջ
Աչքով անում,
Խաղում են ժիր,
Ուրախանում։
Մեկ էլ կողքով
Հանդիսավոր,
Աստղիկ անցավ
Մի գիսավոր։
Թե այդ շիթը
Լիներ մի քար,
Վախից կրկին
Ջուր կդառնար։
Բայց սարսափը
Շուտ մոռացավ,
Երբ որ շողաց
Լույս ծիածան։
Ծիածանին
Փարվեց իսկույն
Ու նա ինքն էլ
Շողաց գույն-գույն։
Հետո բախտը
Քամուն հանձնած,
Ջրի շիթը
Գնաց-գնաց։
Գնաց երկինք
Ու վերացավ,
Ջրից, հողից
Շատ հեռացավ։
Քամին սակայն
Ճամփի կեսին
Գնաց կպավ
Ամպի փեշին։
Շիթը ցրտից
Սառեց իսկույն,
Դարձավ ճերմակ
Մի կաթիլ ձյուն։
Պարում էր նա
Կապույտ օդում,
Բայց իր մորն էր
Միշտ կարոտում...
Ու մի օր էլ
Դանդաղորեն
Իր մոր գիրկը
Դարձավ նորեն։
Վերադարձավ
Մոր գիրկը տաք
Ու ջուր դարձավ
Նորից հստակ։
Մայրը հարցրեց.
— Ի՞նչ կար այնտեղ,
Ասա, բալիկ
Իմ աչագեղ։
— Ամպեր տեսա՝
Կուտակ-կուտակ,
Աստղեր տեսա՝
Կապույտ սուտակ,
Բայց ամենից
Ջքնաղն էլի,
Դու ես, մայրի՛կ
Իմ սիրելի։

*Նկ. ԱԼԲԵՐՏ ՀՈՎԱՆԻ*

Դիկն իր այտի վրա խավոտ մի բան զգաց ու արթնացավ: Նրա վրա բարի հետաքըրքըրասիրությամբ թեքվել էր մի աշխետ ձի:

— Մալիշ, մոտեցիր ինձ, ճանապարհվելու ժամանակն է:

Դիկը վախեցած վեր թռավ, բայց իսկույն զգաց, որ խոսքերը ձիուն էին վերաբերում, որը հեռանում էր իրենից:

— Ապրես, Մալիշ: Հիմա մնում է, որ դու մի քիչ թափ տաս քեզ: Ինձ միշտ անհանգստացրել է այդ պահը: Ի դեպ այդպիսի մի առավոտ հուզվել կարող էր միայն կախաղանի դատապարտվածը: Հույս ունեմ, համաձայն եք ինձ հետ:

Անծանոթը դուրս եկավ ծառի հետևից և այժմ արդեն խոսում էր՝ դիմելով Դիկին:

— Այո, սըր...— վեհերոտ հաստատեց Դիկը:

Տաք էր: Թռչունները բարձրախոսում էին, ու մեղմ ճառագայթները ոսկեզօծում էին սաղարթները: Անծանոթը դեմքը պարզեց լույսին ու կկոցեց աչքերը: Ճառագայթը սահեց նրա թարթիչների վրայով ու դողաց նրա ժպտացող շուրթերին:

Անծանոթը նորից Դիկին նայեց, այս անգամ արդեն սևեռուն և առանց ժպտալու.

— Եվ այնուամենայնիվ, այս առավոտը ձեզ չի՞ ուրախացնում, իմ սիրելի բարեկամ:

— Ո՛չ, սըր:

Անծանոթի դեմքին կպրեկցանք կար.

— Ներիր, բարեկամս, ես քեզ մոլորեցրի: Մեղավորը ես չեմ, իմ արհեստն է, որը ստիպում է ինձ կռահել, թե ում հոգում ինչ կա:

Հազիվ շունչ առնելով, Դիկը նորից անհանգստացավ: «Արդեն պարզ է, թե ինչ արհեստ է դա, էլ պետք չէ ձևացնել և մեղա գալ»: Նոր էին անցել այդ բառերը նրա մտքով, երբ անծանոթն իսկույն պատասխանեց.

— Բայց ոչ, ո՛չ, բոլորովին էլ դա չի իմ արհեստը,— և բաց թողնելով Դիկի ուսը՝ անհոգ ծիծաղեց:

— Դու ինչո՞ւ չես փախչում,— ծիծաղի միջից հարցրեց նա՝ սրբելով աչքերը,— չէ՞ որ ես քո հետևից չեմ հասնի:

Դիկը նայում էր անծանոթին և ոչինչ չէր հասկանում: Հանկարծ նա ինքն էլ ծիծաղեց կարճ, անվստահ ծիծաղով, առանց վախի: Այդ ժամանակ անծանոթը Դիկին իր կողմը քաշեց, հետո հրեց նրան կանաչների վրա ու ինքն էլ տեղավորվեց նրա կողքին:

— Ես գաղտնի գործակալ չեմ, տղաս, ես դերասան եմ ու ստեղծագործող: Լսե՞լ ես «Գլոբուս» թատրոնի մասին, Թեմզայի այն կողմում:

— Ես այնտեղ ներկայացում եմ դիտել,— հպարտացավ Դիկը,— ինչպե՞ս էր... «Չկա աշխարհում ավելի ծանր մի սիրավեպ, քան «Ռոմեո և Ջուլիետի» սիրավեպն է...»

— Ա՛խ, դու անգամ «Ռոմեոն» ես տեսել: Թույլ տուր այդ դեպքում հարցնել, ու՞մ ես հիշում դու:

ՄԱՐԳԱՐԻՏԱ ՅԱԽՈՆՏՈՎԱ

Նկ. ԱԼ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

— Եվ այսպես, համաձայնելով, որ առավոտը չի կարող ուրախացնել միայն կախաղան բարձրացողին, ես խոստովանում եմ, որ դա մեզ չի ուրախացնում, և այնուամենայնիվ...

Նրա խոսքը կիսատ մնաց: Դիկը թափով ծունկի իջավ նրա առաջ.

— Ես ոչ մի մատանի չեմ գողացել, սըր, խնայեք ինձ:

Անծանոթը շտապ բարձրացրեց տղային, ձեռքը դրեց նրա ուսին: Դիկը սառեց տեղում. «թագուհու անունից, հետևեցեք ինձ» խոսքերը մեխվեցին նրա սիրտը: Սակայն անծանոթը չարտասանեց այդ բառերը: Նայելով Դիկին՝ նա ասաց.

— Ռոմեոյին, իր ընկեր Մերկուցիոյին, Ջուլիետին, նրա դայակին, նրա եղբայր Տիբալտին, որը խորտակեց նրանց բոլորին:

— Իսկ ճգնավոր Լորենցոն չտպավորվե՞ց:

— Օ՜... ոչ, սըր... վատ եմ հիշում...

— Ըհը... ես Վիլյամ Շեքսպիրն եմ, այդ հիանալի ողբերգության հեղինակը:

— Հեղինա՞կը...— Դիկը անվստահ նայեց.— Մի՞թե այս բոլորը իրականություն չէ:

— Դա շատ դժվար հարց է, տղաս, գուցե ավելի հեշտ է ասել ինձ քո անունը: Համեստաբար ես չեմ պնդում, որ դու անես ինձ այն մատանու պատմությու-

նը, որի մասին դու թեթևակի հիշեցիր մեր հաճելի խոսակցության սկզբում:

— Ոչ մի պատմություն չի եղել, միստր Շեքսպիր: Մատանին գողացել են, և, չգիտես ինչու, ինձ են մեղադրում, գուցե նրա համար, որ այդ ժամանակ մենակ ես էի խանութում: Այդ մատանին ահագին գումար արժե, թագուհին այն նվիրել է իր իշխաններից մեկին, որը այն պահելու է տվել իր տիրոջը՝ Մելլոքին, լոնդոնցի ոսկերչին: Եվ ահա մատանին կորել է: Տանտերը տնով մեկ գոռում էր: Նա ինձ տեղում կթողներ, եթե չմիջամտեր նրա սիրելի միսս Ջեսսին, որը ինձ օգնեց փախչել տանից, ասելով. «Փախի՛ր, Դիկ, ինչքան ուժ ունես, փախիր Լոնդոնից»:

— Երևի շատ հաճելի աղջիկ է այդ Ջեսսի Մելլոքը: Նա մի՞շտ էր քեզ պաշտպանում:

— Ճիշտն ասած, ո՛չ, միստր Շեքսպիր: Միսս Ջեսսին այնքան ուրախ աղջիկ է, նա միայն ծիծաղում էր, երբ հայրը հարվածում էր իմ ծոծրակին: Բայց սա ուրիշ բան է, սը՛ր, դուք հասկանու՞մ եք:

— Ես չէի ասի, որ հասկանում եմ, բայց սա իրոք ուրիշ բան է... Եվ այսպես, իմ խեղճ Դիկ, երեկվանից դու անվերջ հեռանում ես Լոնդոնից, բայց ո՞ւր:

— Չգիտեմ, միստր Շեքսպիր,— ծամածռվեց Դիկը,— գուցե Շերվուդյան անտա՞ռ, Ռոբին Հուդի մո՞տ:

Շեքսպիրը վեր թռավ հուզված և ափով հարթեց մազերը.

— Ռոբին Հուդի մո՞տ, դուք հեռավոր աստղերի՞ց եք ընկել, սըր Ռիչարդ: Ռոբին Հուդը ապրում էր անհիշելի ժամանակներում, արքա Ջոհաննեի օրոք, իսկ մենք քեզ հետ միասին, կես տարուց մուտք կգործենք տասնյոթերորդ դարը: Այդ դարը ճառագված էր Ելիզավետա թագուհու իմաստությամբ, որը խորտակեց իսպանական նավատորմը և գլխատեց իր շոտլանդուհի քրոջը՝ Մարիային: Ավելին կարելի՞ է երևակայել:

Դիկը լուռ շրջվեց: Ավելին հնարավոր չէր հորինել: Նա հուսադրված հարցրեց.

— Իսկ դուք, միստր Շեքսպիր, հեռո՞ւ եք գնում:

— Ո՛չ, Դիկ: Ես պարզապես սիրում եմ գնալ անտառի խորքերը և ճգնավոր զգալ ինձ: Բախտը ամեն անգամ հաճելի հանդիպումներ չի ստեղծում անտառում:



Շեքսպիրը լռեց, նրան թվաց, թե Դիկը իրեն չի լըսում և հայացքով ինչ-որ բան է որսում: Քիչ հետո, ծառերի հետևից մի թուխ աղջիկ դուրս եկավ՝ փոքրիկ մի կապոց ձեռքին, և պճնամոլ մի տղամարդ: Նըրանք այնքան էին իրարով տարված, որ քիչ էր մընում անցնեին, երբ Դիկը գոռալով նետվեց աղջկա մոտ.

— Մի՛սս Ջեսսի:

Աղջիկը վախեցած սեղմվեց իր ուղեկցին:

— Մի՛ վախեցեք, միսս Ջեսսի: Ես ուզում եմ, դուք իմանաք, որ ես ոչ մի մատանի չեմ վերցրել, դուք չըմտածեք...

Ճանաչելով Դիկին, աղջիկը իրեն կորցրեց և շտապեց պատասխանել.

— Ես գիտեմ, որ դու չես վերցրել, Դիկ, գնա քո

ճանապարհով,— և հեռացնելով տղային, իր ուղեկցի հետ թեքեց ճանապարհը:

— Մի ակնթարթ, միսս Մելլոք,— քաղաքավարությամբ ընդհատեց նրանց ճանապարհը Շեքսպիրը: Նա չէր ժպտում: Ձեռքերը խաչելով կրծքին՝ ուշադիր նայում էր զույգին:— Իսկ ինձ թվում էր, թե ոսկերիչների աղջիկները այս ժամին [illegible]անը նստած սերուցքով թեյ են խմում: Եվ... ջենտլմեն, ներեցեք, կարծեմ ինձ ծանոթ է ձեր դեմքը, եթե չեմ սխալվում, իշխան Դերբիի սենեկապետը նույնպես շուտ է արթնացել:

Տղամարդը առաջ նետվեց:

— Ո՛չ, ո՛չ, ես ձեզ խանգարելու մտադրություն չունեմ: Կարծում եմ, որ կարող եք շարունակել ձեր ճանապարհը: Հայր Ջոնի մոտ ամեն ինչ պատրաստ է: Ես ծանոթ եմ այդ քահանային, նա հաճույքով է պսակում փախստական զույգերին: Ընդունեք իմ շնորհավորանքը, միսս Ջեսսի:

Ջեսսին ապուշ էր կտրել: Նա քաղաքավարությամբ խոնարհեց գլուխը:

— Ես կարծում եմ, որ ձեր հայրը շուտով կների իր միակ աղջկան,— շարունակեց Շեքսպիրը,— թեկուզ համաձայն եմ, որ ամուսնությունը այս թեթևսոլիկի հետ կասկածելի մի բան է: Եվ հավատացնում եմ ձեզ, որ նորին մեծության կողմից իշխան Դերբիին նվիրած մատանին երկու շաբաթ առաջ միայն արգելք կարող էր հանդիսանալ ձեր երջանկությանը: Ահա այդ պատճառով էլ,— նա ձեռքը առաջ պարզեց,— թող ջենտլմենը հրաժարվի այդ մատանուց: Ես սպասում եմ:

Դիկը կարծում էր, որ Ջեսսիի ուղեկիցը կհարձակվի Շեքսպիրի վրա: Նա վախենում էր, որ Շեքսպիրի վիճակը վատ լինի: Նրա հակառակորդը հաղթանդամ մի մարդ էր: Բայց սենեկապետը միայն բղավեց.

— Մատանի՛ն, նետի՛ր նրան, Ջեսսի՛:

Ջեսսին հանեց ձեռնոցը, որը ծածկում էր մեծ զըմրուխտով մատանին: Շեքսպիրը զգուշորեն աղջկա մատից հանեց մատանին և գլուխ տալով ասաց.

— Դուք ազատ եք,—ապա նայելով հեռացողների հետևից՝ ավելացրեց.— Գուցե աղջկան էլ պետք էր վերադարձնել ծերուկին, բայց այդ երեքն էլ իրար արժեն: Հավատացած եմ, որ ծերունին մատանու կորուստը ավելի է սգում, քան աղջկա փախուստը:

Դիկը հիացած նայում էր Շեքսպիրին.

— Բայց դուք ի՞նչպես գլխի ընկաք, սըր...

— Այդ նույն արհեստն է, որը սիրում է դիտել, համեմատել և եզրակացություններ անել: Մտածիր, դու էլ կհասկանաս: Իսկ հանդիսականները շուտով մի խառնաշփոթ կատակերգություն կդիտեն այն մասին, թե ինչպիսի հետաքրքիր արկածներ են տեղի ունենում ամառային այգում: Բայց ո՛չ, այդ մասին կարելի է մի քանի տարբեր կատակերգություններ գրել: Սակայն ժլատ ծերուկից ինչպե՞ս է փախել նրա աղջիկը, իր հետ տանելով գանձերը, դա արդեն ավելի լուրջ բան է: Թող այն ժամանակ դատեն, արդյոք այդպե՞ս է եղել: Գնանք, տղաս, Մալըշը երկուսիս էլ տեղ կըհասցնի:

— Դուք ուզում եք ինձ ոսկերչի՞ մոտ տանել, միստր Շեքսպիր:

— Ո՛չ, Դիկ, Մելլոքի մոտ ես մեն[illegible] կգնամ: Դու այնտեղ այլևս գործ չունես: Դու ինձ հետ կգաս «Գլոբուս», ես քեզ լավ դերասան կդարձնեմ: Սկզբում դու երիտասարդ աղջիկների դեր կկատարես, չէ՞ որ մեր Անգլիայում դերասանուհիներ չկան, իսկ հետո...— նա ժպտաց ու հաճույքով շփեց բեղերը,— Վիլյամ Շեքըսպիրի ստեղծագործություններում ուզածդ տարիքի համար դեր կգտնվի: Որոշի՛ր, Դիկ:

Դիկի երկնագույն աչքերը անթարթ նայում էին Շեքսպիրին: Այդ նիհար, միջահասակ մարդը նրան արտակարգ ճարպիկ, բարձրահասակ և ուժեղ թվաց, ու ինքը նրա հետևից ամեն տեղ կգնար: Եվ սակայն...

— Դա այնքան անսպասելի էր ինձ համար, սըր:

— Երբ ես 15 տարի առաջ թատրոնի համար թողեցի իմ հայրենի քաղաքը, դա շատերի համար անսպասելի էր: Իսկ հիմա: Իսկ հիմա, եթե ես թողնեմ թատրոնը ու վերադառնամ իմ քաղաքը, մի քանի դարով կմտահոգեմ ողջ աշխարհը... Դե, Մալիշ, շարժվիր:

Եվ թռչելով թամբին, նա Դիկին ճարպկորեն նստեցրեց իր առջևում:

Թարգմ. ՄԱՐԻԱ ՀԱԿՈԲՅԱՆԸ






## ԻՆՉՊԻՍԻ՞Ն ԵՍ ԴՈՒ, ՄԱՐՍ

«Ինչպե՞ս կարող է կյանք լինել այդ դժբախտ Երկրագնդի վրա: Սարսափելի շոգ է այնտեղ, անընդհատ խիտ ամպեր են սողում մակերևույթով և հեղեղի նման անձրևներ են գալիս: Իսկ օ՞դը: Օդն այնքան խիտ է, որ եթե շնչես, տեղնուտեղը կխեղդվես, այնքան որ թթվածին կա մեջը: Չէ՛, Երկրագունդ մոլորակի վրա ապրել չի լինի: Դա շատ շոգ, ամբողջովին թաց և անկյանք մոլորակ է»:

Այսպես են երևի մարսեցիները դատում Երկրի մասին, եթե իրոք նրանք կան: Չէ՞ որ նույն ձևով մենք ենք խոսում Մարսի մասին և ահա թե ինչու:

Եթե մեծ աստղադիտակով նայելու լինենք Մարսին, նրա վրա կանաչավուն բծեր կնկատվեն, իսկ վերևում գլխարկի նման մի սպիտակ ծածկոց կերևա: Մոլորակի մյուս մասերը կարմիր ավազի գույն ունեն, որը տեղ-տեղ մուգանում է և երևում է այնպես, ինչպես գլոբուսի վրա ծովերն ու օվկիանոսներն են: Նայում ես և ակամա մտածում, որ այնտեղ, հեռվում, մի ուրիշ երկիր կա, որ այնտեղ կա այն ամենը, ինչ մեզ մոտ՝ կապույտ երկինք ու ամպեր, ծովեր ու գետեր, լեռներ ու հարթավայրեր:

Մեր արևի ընտանիքի մոլորակներից ամենից շատ Մարսն է Երկրին նման: Եվ երևի Լուսնից հետո մարդը առաջինը ոտք կդնի Մարսի վրա:

Մարսի մթնոլորտը մերի հետ համեմատած մի հարյուր անգամ նոսր է: Մարդն, անշուշտ, այնտեղ ապրել չի կարող, մարդու համար Մարսի մթնոլորտն ուղղակի դատարկություն է: Մարսի օդն իր կազմվածքով էլ տարբերվում է մերից, որն, ըստ երևույթին, կազմված է ազոտի և ածխաթթու գազի խառնուրդից: Ջրային գոլորշիներ ու թթվածին այնտեղ քիչ կան: Գուցե և ամենևին չկան: Եթե նույնիսկ Մարսի օդը խիտ էլ լիներ, էլի մարդը շնչել չէր կարողանա:

Իսկ ջուր կա՞ Մարսի վրա: Երբ աստղադիտակով նայում ենք Մարսին, կարմրավուն տարածությունները ավազոտ անապատներ են հիշեցնում: Իսկ մուգ տարածություննե՞րը: Աստղագետները դրանց «ծով» են անվանում, բայց այդ միայն նրա համար, որ երբ օդանավից նայում ենք Երկրին, մեր ծովերն էլ են մուգ գույնի երեվում: Բայց մեր ծովերը, երբ արևի ճառագայթները ընկնում են դիմացից, հայելու նման փայլում են, իսկ Մարսի վրա ոչ մի փայլող բան չի երևում: Այնպես որ «ծով» արտահայտությունը պայմանական է: Չնայած դրան, Մարսի վրա ջուր կա:

## ՍՊԻՏԱԿ ԳԼԽԱՐԿԸ

Հետևենք սպիտակ «գլխարկին», որը մոլորակի ամենացուրտ տեղում է, նրա բևեռում: Եթե Մարսի այդ կիսագնդում ձմեռ է՝ «գլխարկը» կա, իսկ գարնանն սկըսում է հալվել, փոքրանալ: Երբ վրա է հասնում ամառը՝ բոլորովին կորչում է: Ձմռանը նորից է հայտնվում և սկսում է աստիճանաբար մեծանալ:

Պարզ է, որ դա սառած ջուր է՝ ձյուն: Ճիշտ է, Մարսի վրա ձյան շերտը շատ բարակ է, քանի որ շատ շուտ է հալվում: Եվ քանի որ այդ ձյունը հալվում է, ուրեմն կա նաև ջուր: Երբեմն Մարսի վրա նոսր ամպեր են երևում: Նկատվում է նաև առավոտյան մառախուղը: Դա էլ ջուր է:



Աստղագետներն հատուկ սարքեր ունեն, որոնց միջոցով չափում են մոլորակների ջերմությունը: Մարսի վրա ամենատաք տեղում, տարվա ամենատաք եղանակին, օրվա ամենատաք ժամանակ՝ կեսօրին, ջերմությունը հասնում է քսան աստիճանի: Բայց մոլորակի հենց այդ մասում 12 ժամ հետո 50 աստիճան սառնամանիք է լինում: Պատճառը շատ նոսր մթնոլորտն է:

Այսպիսով, Մարսի վրա ջուրը




Մարսի բևեռային «գլխարկը» աստիճանաբար հալվում է

# ՄԱՐՍԻ ՎՐԱ ԿՅԱՆՔ ԿԱ՞

քիչ է, ջերմության անմիջապես հաջորդում է սառնամանիքը, կարգին օդ չկա: Կարո՞ղ է այդքան



Մարսը այսպես է երևում լուսանկարներում

անբարեհամբույր մոլորակի վրա կյանք լինել:

Այս հարցին այժմ գիտնականները որոշակի պատասխան են տալիս՝

## ԱՅՈ՛, ՄԱՐՍԻ ՎՐԱ ԿՅԱՆՔ ԿԱ...

Այդ ինչու՞ Երկրագնդի վրա բույսերն ու կենդանիները կարգանալով աստիճանաբար կհարմարվեին երկրային պայմաններին, մեր օդին, ջրի առատությանը, մեր կլիմային, իսկ Մարսի վրա կարգացման միլիարդ տարիների ընթացքում չէին կարող վարժվել մարսային պայմաններին: Դրա համար էլ միանգամայն հնարավոր է, որ Մարսի վրա լինեն բարձր կարգացած բույսեր և կենդանիներ: Կարող են լինել նաև գիտակից արարածներ: Մի բան միայն հաստատ է, որ այդ արարածները մեզ նման լինել չեն կարող: Չէ՞ որ նրանք պետք է հարմարված լինեն Մարսի պայմաններին, որոնք խստորեն տարբերվում են երկրայինից:

Բայց հիմա տեսնենք, թե ի՞նչն է հիմք տալիս ասելու, որ Մարսի վրա կյանք կա: Ինչպես տեսանք, ձմռանը Մարսի բևեռի վրա սպիտակ մի մեծ շերտ է լինում, որոնշեցինք, որ դա ձյուն է: Գարնանը ձյունաշերտն սկսում է հալվել և նրա շուրջը մուգանում է, կարծես հողը թրջված լինի: Հետո սկսում է արտակարգ մի բան տեղի ունենալ՝ «ծովերի» շրջանում կանաչ գույն է հայտնվում: Հետզհետե կանաչը տարածվում է «ծովերով» մեկ: Աշնանը կանաչ գույնն սկսում է կամաց-կամաց փոխվել, մինչև որ առաջվա նման գորշանում է: Հետո կանաչ է հագնում մյուս կիսագունդը:

Ահա այս բոլորն հաշվի առնելով, հիմա բոլոր գիտնականները համաձայնության են եկել, որ Մարսի մուգ տարածությունները դրանք բուսականությամբ ծածկված մասերն են: Մենք տեսնում ենք անտառային մեծ կանգվածներ: Իսկ որտեղ որ անտառ կա, այնտեղ էլ կլինեն կենդանիներ, որտեղ կենդանիներ, այնտեղ էլ ժամանակի ընթացքում կստեղծվեն գիտակից արարածներ:

Մարսեցիներին հեռադիտակով նկատելն այնքան էլ հեշտ չի, նրանք շատ փոքր են: Բայց նրանց աշխատանքի արդյունքը կարելի է տեսնել: Երբ օդանավով թռչելիս ինը կիլոմետրանոց բարձունքից նայում ենք ներքև, մարդիկ չեն երևում, բայց շատ լավ երևում է նրանց կատարած աշխատանքի արդյունքը: Բնության մեջ ամեն ինչ ծուռումուռ է, իսկ մարդու ստեղծածը միշտ էլ ուղիղ է լինում՝ ճանապարհներն են ուղիղ, շենքերը, դաշտերի սահմանագծերը, ջրանցքները:



Հեռվից նայելիս միայն ուղիղ գիծն է առանձնացնում մարդու կառուցածը բնության «կառուցածից»:

## ՄԱՐՍԻ ՋՐԱՆՑՔՆԵՐԸ

Նորից նայենք Մարսին: Ուղիղ գծեր չե՞ն երևում նրա վրա: Թեև շատ դժվար է ժամանակակից հեռադիտակով մանր բաները նկատել, մանավանդ որ խանգարում է երկրային մթնոլորտը, բայց լինում են պահեր, երբ պարզ երևում են բարակ և ուղիղ գծեր, որոնք հատում են Մարսի անապատները, իրար են միացնում «ծովերը»: Այնտեղ, որտեղ գծերը հատում են իրար, մուգ հանգույցներ են երևում: Այդ գծերը երբեք չեն ընդհատվում ճանապարհի կեսին՝ մի ծովում սկսվում են, մյուսում վեր-




Արեգակի շուրջը պտտվում է մոլորակների մի ամբողջ ընտանիք

ջանում: Բայց որքան էլ մեր աչքին այդ «ջրանցքները» բարակ



գիծ երևան, էլի նրանց լայնությունը տասնյակ կիլոմետրերի է հասնում: Այդքան մեծ նեղուցները եթե ջրով լցված լինեին, անպայման արևի տակ կփայլեին, բացի այդ՝ Մարսի վրա ջրի առատություն չկա: Այնպես որ «ջրանցք» անունը պայմանական է: Հետագայում, երբ հեռադիտակներն ավելի կատարելագործվեցին, պարզվեց, որ Մարսի վրայի գծերը աչքի խաբկանք են միայն, որ գծերի փոխարեն ուղիղ շերտով փռված են երկարավուն կետեր: Պատկերացրեք այսպիսի բան. մեկը պարկով ցորեն է տանում, իսկ պարկը մի փոքրիկ անցք ունի, ցորենը թափվում է ցած: Հեռվից նայելով գետնի վրա գիծ կերևա, իսկ եթե նայելու լինեք մոտիկից, կերևան ցորենի առանձին հատիկները՝ իրարից հեռու-հեռու ընկած: Այդպես էլ Մարսի «ջրանցքներն» են: Բայց այդ դեպքում ի՞նչ են դրանք: Նկատել են, որ «ջրանցքները» գարնանը մուգանում են, իսկ ձմռանը գունաթափվում: Դա կատարվում է այն ժամանակ, երբ գունաթափվում և կանաչում են «ծովերը»: Այստեղից գիտնականները ենթադրում են, որ «ջրանցքները» օազիսներ են, որոնք ձգվում են Մարսի անապատների միջով: Դրանք անտառաշերտեր են, պուրակներ: Չէ՞ որ ենթադրում են, թե «ծովերը» անտառների մեծ կանգվածներ են: Բայց այդ կանաչ շղթաներն ինչո՞ւ են ուղիղ: Շատ ենթադրություններ են անում գիտնականները, բայց գաղտնիքը մնում է գաղտնիք:





Միայն Մարսի վրա թռչելով կարելի կլինի այդ գաղտնիքը պարզել: Հույս կա, որ մոտավորապես 1980 թվականին մարդը կկարողանա իջնել Մարսի վրա: Մեր և ամերիկյան գիտնականները այժմ եռանդով պատրաստվում են դրան: Այն ժամանակ էլ գաղտնիքը կբացվի:







Ինչպիսի՞ն ես դու, մարսեցի...

# ՉԵՄՊԻՈՆՈՒՀՈՒ

*Սուսաննա Նիկողոսյանը դեռ երրորդ դասարանում էր, որ ընդգրկվեց թեթև ատլետիկայի խմբակում:*

*Սուսիկ, այդպես են ասում նրան՝ ընկերասեր, կարճ կտրած մազերով, վայրի ճնճղուկի սիրուն աչքերով այդ աղջկան: Սուսիկը վաղ հասակում աչքի էր ընկնում արագաշարժությամբ, ժիր ու թռվռուն բնավորությամբ: Մի փոս կամ առու տեսնելիս անպայման վազում և ցատկում էր վրայից, հետո նույնը անում հակառակ կողմից: Ընկերուհիներին մեծավարի խրատում էր. «Ա՛յ, այսպես պետք է ցատկել...» — և նորից էր փորձում: Իսկ խաղերում ամենաարագավազն էր, միշտ հաղթող էր ճանաչվում:*

*Սուսիկի բնական լավ օժտվածությունն էր պատճառը, որ 9 տարեկան հասակում ընդգրկվեց 11-12 տարեկանների խմբում: Սակայն նա երկար չպարապեց. ծնողներն արգելեցին շարունակել մարզումները:*

*— Սպորտով պարապելը կազդի երեխայի ուսման առաջադիմության վրա, — վճռական տոնով մարզչին ասաց Սուսաննայի մայրը:*

*Անցավ երկու տարի: Դպրոցում անցկացվող ֆիզկուլտուրայի դասերը չէին հագեցնում նրա մեջ սկիզբ առած սպորտային ծարավը:*

*— Ընկեր Տիրան, ես էլ եմ ուզում պարապել... Ծնողներիս ասեք... կթողնե՞ն...— մանկական անմեղությամբ մի օր մարզիչ Թաշչյանին դիմեց Սուսաննան:*

*Կատարվեց նրա երազանքը: Հայրը գրեթե ամեն պարապմունքի աղջկա հետ գալիս էր ստադիոն, դիտում մարզումները: Իսկ Սուսաննան դպրոցում ետ չմնաց, նա ավելի կայտառ ու կենսուրախ դարձավ: Սպորտն օգնեց, որ գրասեղանի մոտ կարողանա ավելի երկար նստել, գրի ու կարդա առանց հոգնելու:*

*Մեկ տարի հետո 100 մետր վազքատարածությունն անցավ 13,8 վայրկյանում: 1965 թվականի գարնանն էր դա: Սկսվեցին համառ ու քրտնաջան մարզումների օրերը: Մինչև տարեվերջ նա կրճատեց նաև 8 տասնորդական վայրկյանը:*

*Տաք օրերին հաջորդեցին ցրտերը: Քաղաքը պատվեց ձյան սպիտակ սավանով, և թեթև ատլետները ստադիոնից տեղափոխվեցին մարզասրահ: Անվիճելի է, որ սպորտային հաջողությունների հիմ-*

# ԱՐԺԱՆԻ ՓՈԽԱՐԻՆՈՂԸ

քը դրվում է ձմռանը՝ մարզման նախապատրաստական շրջանում։ Մարզվողները զարգանում են ֆիզիկապես, կատարելագործում վարժությունների տեխնիկան, ձեռք բերում արագություն, ճարպկություն, ցատկունակություն, իսկ մրցակցական շրջանում հասնում նոր հաջողությունների։ Մարզումների ընթացքում իրար էին հաջորդում վազքերը, ցատկերը, նետումները, լցրած գնդակներով ու ծանրություններով վարժությունները և սպորտային զանազան խաղեր։

1966 թվականի գարուն։ Անդրկովկասյան և Մոլդավական հանրապետությունների թեթև ատլետների մատչային հանդիպման նախօրյակին, Հայաստանի հավաքական թիմը կոմպլեկտավորելու համար անցկացված մրցումներում տեղի ունեցավ առաջին անակնկալը. 100 մետր վազքում նորեկն իր բարձրության վրա գտնվեց։ Հաղթելով բոլոր մրցակիցներին, առաջինն ավարտեց հարյուր մետրանոց վազքատարածությունը՝ 12, 3 վայրկյանում։ Իսկ մի քանի ամիս հետո Նիկոլաև քաղաքում մասնակցելով համամիութենական մրցումներին, գրավեց 4-րդ տեղը։

Սուսաննա Նիկողոսյանը հաջող սկսեց նաև հոբելյանական տարվա մրցաշրջանը։ Լենինգրադում անցկացված դպրոցականների համամիութենական ձմեռային մրցումներում զբաղեցրեց 5-րդ հորիզոնականը։

Սուսաննան ոչ միայն շնորհալի արագավազ է, այլև լավ հեռացատկորդ (5 մետր 20 սանտիմետր), բասկետբոլիստ, վոլեյբոլիստ, մի խոսքով՝ բազմակողմանի զարգացած մարզուհի, նաև ուսման առաջավոր։



Լուսանկարը՝ Ա. ՀԵՔԵՔՅԱՆԻ

Սուսաննան ոչ միայն ցույց տվեց սպորտային առաջին կարգի արդյունք, այլև հաղթեց Հայաստանի բազմակի չեմպիոնուհի, ՍՍՀՄ սպորտի վարպետ Էռա Ոսկանյանին։ Տասներեքամյա չեմպիոնուհուն առաջինը շնորհավորեց Էռա Ոսկանյանը և իր արժանի փոխարինողին նոր հաջողություններ մաղթեց։ Հաջորդ մրցումներին Սուսաննան

Երևանի 26 կոմիսարների անվան դպրոցի աշակերտուհի Սուսաննա Նիկողոսյանը այն սակավաթիվ մարզուհիներից է, որոնք մասնակցեցին Մեծ Հոկտեմբերի 50-ամյակին նվիրված դպրոցականների համամիութենական 10-րդ սպարտակիադային։

ՄԱՐՏՈՒՆ ՔՈՋԱՐՅԱՆ

Լույս է տեսնում 1923 թվականից



# ՊԻՈՆԵՐ

7 ՀՈՒԼԻՍ 1967

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

1. Անտառային հրաշք—Ն. ՄԻՔԱՅԵԼՅԱՆ
2. Անծուխ կրակ—Հ. ՍԻՐԱՍ . . . . . . . . . . . 3
3. Ճամբարի մոտով—Ս. ԽԱՐԱՋՅԱՆ . . . . . . . . . 5
4. Ծաղկում է թուրքմենական հողը . . . . . . . . 6
5. Անապատը նահանջում է . . . . . . . . . . . . 8
6. Յոթ եղբայրների ծառը . . . . . . . . . . . . 8
7. Թուրքմենական ժենշեն . . . . . . . . . . . . 9
8. Լենինի անվամբ . . . . . . . . . . . . . . . 10
9. Անականջ Միռոն—Զ. ՍԱՐԳՍՅԱՆ . . . . . . . . . 12
10. Գիշեր—Վ. ԱՌԱՔԵԼՅԱՆ . . . . . . . . . . . . 12
11. Ամենից չքնաղ—Վ. ԲԱՐԱՅԱՆ . . . . . . . . . . 14
12. Ոսկերիչ Մեյլորի մատանին—Մ. ՑԱԽՈՒՆՏՈՎԱ . . . 15
13. Ինչուկ . . . . . . . . . . . . . . . . . . 18
14. Չեմպիոնուհու արժանի փոխարինողը—Մ. ՔՈՉԱՐՅԱՆ 21
15. Պիոներական ամառը գյուղական վայրերում . . . . 22

Շապիկի առաջին էջը՝
նկ. ԳԵՎՈՐԳ ԳՐԻԳՈՐՅԱՆԻ (Ջիոտտո)

չորրորդ էջը՝
նկ. ՌԱՖԻԿ ՊԵՏՐՈՍՅԱՆԻ



„Пионер“ на армянском языке. Адрес редакции: Ереван ул. Кармир банаки, № 41.

Հասցեն՝ Երևան, Կարմիր բանակի փողոց, № 41, հեռախոսներ՝ 2—44—83, 2—68—16, 2—59—06։

ՎՖ 06473։ Պատվեր՝ 822։ Տպաքանակ՝ 42000։ Տպագրական 3 մամուլ։ Ստորագրված է տպագրության 8/VII 1967 թ.։
ՀՍՍՀ Մինիստրների սովետի մամուլի պետական կոմիտեի պոլիգրաֆարդյունաբերության գլխավոր վարչության Հ. Մեղապարտի անվան պոլիգրաֆկոմբինատ, Երևան, Տերյան փ. № 91։

Գինը՝ 10 կ.

*Արկածային վիպակ*

### ՆԱԽԱՄԱՐԴ ՏՂԱՅԻ ԱՐԿԱԾՆԵՐԸ

*Հեղինակ՝*
*Դ՚ ԷՐՎԻԼԻ*

## ԿԱՐԴԱՑԵՔ

Տղամարդիկ գնացել են որսի. կանայք ու ծերունիները անտառում են, միայն Կրեկն է մնացել քարանձավում: Նա պետք է կրակը վառ պահի:

Կրակը նախամարդու պաշտպանն է ու հովանավորը, որը և՛ քարայրն է տաքացնում, և՛ լույս է տալիս, և՛ միսն է խորովում: Եթե մեկը պատճառ դառնա, որ կրակը հանգչի, տոհմը մահվան կդատապարտի նրան...

Քաղցած է Կրեկը: Նա հիմա կգնար անտառ, չոր արմտիք կծամեր, գուցե և առնետ գտներ, սակայն չի կարող քարանձավը թողնել:

Բայց ահա ներս է վազում Օժոն, Կրեկի փոքրիկ եղբայրը և ցույց է տալիս սպանված առնետը.

# ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԱՄԱՌԸ

*Արդեն սկսվել են դպրոցականների ամառային արձակուրդի օրերը: Սակայն պիոներական ջոկատներն ու դրուժինաները «արձակուրդ չեն գնում», չէ՞ որ պիոներական աշխատանքում ընդհատում, դադար լինել չի կարող: Այդ է պատճառը, և ճիշտը դա է, որ շատ դրուժինաների աշխատանքային պլանները սկըսվում և վերջանում են սեպտեմբերի 1-ով: Դա հնարավորություն է տալիս յուրաքանչյուր պիոների պարզ պատկերացնելու իր անելիքը, ջոկատի ընդհանուր աշխատանքում ոչ միայն դպրոցական պարապմունքների ժամանակ, այլև ամռան ամիսներին:*

*Ամառային արձակուրդի ընթացքում փոփոխության է ենթարկվում օղակի, ջոկատի և դրուժինայի կազմը, շատերը մեկնում են պիոներական ճամբարներ, ծնողների հետ գնում են շրջագայության և այլն:*

*Գյուղական վայրերում աշակերտների մեծ մասը իր ամառային հանգիստը անց է կացնում իր հայրենի գյուղում: Այս հանգամանքը չպետք է դուրս մնա ավագ և ջոկատային ջոկատավարների տեսադաշտից. նրանք պետք է ամեն ինչ անեն, որպեսզի պիոներական ամառը գյուղում անցնի հետաքրքիր, նպաստի մանկական կոլեկտիվի ամրապնդմանը:*

*Ինչպես նախորդ տարիներին, այս տարի էլ ամառային արձակուրդի օրերին կգործեն բակային ճամբարները, դպրոցական գրադարաններն ու սպորտային հրապարակները: Բայց այսօրվա պահանջների թելադրանքով անհրաժեշտ է գյուղական վայրերում նույնպես ստեղծել պիոներական ճամբարներ: Ինչպե՞ս, ի՞նչ միջոցներով...*

*Ահա թե ինչպես. պիոներական ճամբարները պետք է հիմնել աշակերտական արտադրական բրիգադների բազայի վրա՝ ստացվող եկամուտների հաշվին: Աշա-*

— Տե՛ս, Կրեկ, ես եմ սպանել. ներքևում շատ կան, սրանից, արի դու էլ սպանիր...

— Իսկ կրա՞կը...

— Ոչինչ չի լինի, շատ փայտ դիր վրան, կգաս կհանես:

Կրեկը լսում է փոքր եղբորը և ահա նա կանգնած է ատյանի առաջ:

— Սպանե՛լ,— որոշում են ավագները:— Նա մեռցրել է մեր կրակը, Կրեկը ի՛նքն էլ պետք է մեռնի...

Բայց Կրեկին չեն սպանում: Տոհմավագը փրկում է նրա կյանքն ու փոքրիկ նախամարդուն քշում են տոհմից...

Մութ գիշերով Կրեկը մտնում է գազաններով, գիշատիչ թռչուններով ու թշնամիներով լի անտառը...

Սկսվում են նախամարդ տղայի արկածները...

**ՀԱՋՈՐԴ ՀԱՄԱՐԻՑ**

# ԳՅՈՒՂԱԿԱՆ ՎԱՅՐԵՐՈՒՄ

*կերտական բրիգադը ամառային հանգիստը օգտակար աշխատանքի հետ զուգակցելու լավագույն ձևերից մեկն է: Այն հնարավորություն է տալիս խորացնելու դպրոցում ստացած գիտելիքները, նպաստում է աշակերտների տեխնիկական ստեղծագործության զարգացմանը: Աշակերտական բրիգադում աշխատանքային օրը տևում է 3—4 ժամ, մնացած ժամանակը տրամադրվում է կազմակերպված ժամանցին:*

*Կոլտնտեսությունների, սովխոզների վարչությունները պարտավոր են գյուղական ճամբարների համար տրամադրել շենքային հարմարություններ և անհրաժեշտ գույք: Այս գործում պիոներները միայնակ չեն, նրանց օգնության կգան «Բարեկամների խորհուրդները»:*

*Իսկ ինչպե՞ս լուծել կադրերի հարցը:*

*Յուրաքանչյուր գյուղում, ավանում կան ուսանողներ, որոնք ամռան ամիսներին վերադառնում են գյուղ: Անհրաժեշտ է կոլեկտիվ նամակներ գրել նրանց, խնդրելով, որ վերջիններս համաձայնություն տան ամռան ընթացքում ղեկավարելու ջոկատի, դրուժինայի, արտադրական բրիգադի, տեխնիկական և գեղարվեստական խմբակների աշխատանքները: Եվ նրանք սիրով կընդառաջեն դպրոցականների խնդրանքին: Հասկանալի է, որ պիոներների ամառային հանգստի կազմակերպման հարցերով ամենից առաջ պետք է մտահոգվի պիոներական ավագ ջոկատավարը, որը ամռան ամիսներին աշխատանքի մեջ է համարվում: Դպրոցի ֆիզկուլտուրայի ուսուցիչը, գրադարանավարը և պիոներական դրուժինայի «Բարեկամների խորհրդի» անդամները պետք է լինեն նրա հուսալի օգնականներն ու խորհրդատուները:*

*ԶԻՆԱ ՍՏԵՓԱՆՅԱՆ*

# ՄԵՐ ՄՐՑՈՒՅԹԸ

*Այս համարից սկսած՝ հայտարարում ենք հնարագետների և սրամիտների մրցույթ: Ովքեր ճիշտ կպատասխանեն «Պիոների» 7, 8, 9 և 10 համարների «Հանգստի ժամին» բաժնում տպագրված խնդիրներին ու առաջարկներին և կհավաքեն ամենաբարձր միավորները, խմբագրության կողմից կարժանանան խրախուսանքի:*

*Առաջին հիսուն հոգին կարժանանան խմբագրության հատուկ խրախուսանքին:*

*Հաղթողներից առաջին տասնյակը կստանա Ն. Զարյանի, Վ. Անանյանի, Գ. Բորյանի, Վ. Տալյանի, Վ. Վարդանյանի, Հ. Ղուկասյանի գրքերը՝ հեղինակների մակագրությամբ:*

*Երկրորդ տասնյակը կպարգևատրվի նվերներով:*

*Երեսուն հոգու անուններ կտպագրվեն ամսագրում:*

*Մնացած ճիշտ պատասխանողները կարժանանան ամսագրի հուշաթերթիկին:*

*Արդյունքները կհրապարակվեն 1968 թ. առաջին համարում: Սպասում ենք ձեր նամակներին:*



**Առանձնացրեք ի՞նչ սխալներ են թույլ տրվել**
*(ճիշտ լուծման համար՝ 7 միավոր)*

# ԽԵԼԱՑԻ ՔՈՒՉԻԿԸ

